

# Բ Ա Մ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Հարց է տալիս ինձ Վահրամը.
— Ասա՛, քեռի՛, ի՞նչ է ԲԱՄ-ը:—
Ես ասում եմ.
— Շատ մեծ բան է,
ԲԱՄ-ը վաղվա մեր ճամփան է:
ԲԱՄ-ը պիտի հեռուն գնա՝
Մոտեցնելով ծովերը մեզ:
Նա ուղի է երկար ու լայն
Ու դեռ պիտի շատ երկարի:
Իսկ առայժմ ԲԱՄ-ը, տղա՛ս,
Ասպարեզ է մեծ պայքարի:
Նա երկաթ է, որ ճալվելով
Ռելս է դառնում երկար ու ձիգ.
Երազների ճամփա է մով,
Որ բացվում է կծիկ-կծիկ:

Հողի վրա հավերժական
Այն կամուրջն ենք կապում ԲԱՄ-ով,
Որ տեսնում ես երկնում հաճախ,
Դու անկրկնելի ծիածանով:
Նման է նա ամուր բազկի,
Զահել սրտի արյուն է նա,
Եղբայրական ամեն ազգի
Սրտի մոտիկ հեռուն է նա:
Քրտինքն է նա քո մեծ եղբոր,
Եվ քո քրոջ կրակն անմար,
Իր բարձրությամբ խորհրդավոր,
Իր թռիչքով լայնականմար:
Շունչ ենք տալիս ԲԱՄ-ի շնչին,
Չենք խնայում ուժ ու միտք,
ԲԱՄ-ը դասն է քո առաջին
Եվ քննությունն իմ հերթական:

# Ժ Ա Մ Ա Ց Ո Ւ Յ Ց Ը

*ԳՅՈՒՆԹԵՐ ՖՈՅՍՏԵԼ*

*Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ*

Սա մի հասարակ նիկելե ժամացույցի պատմություն է: Եվ երբ պատահեց այս դեպքը, որի մասին կպատմվի այստեղ, ժամացույցն արդեն մարդկային կես կյանք էր ապրել: Նա ցույց էր տալիս այն ժամը, երբ բանվոր Պաուլ Գրունը պատերազմ գնաց: Նա իր տիրոջ հետ եղել էր տղմոտ խրամատում՝ Վերդենի մոտ: Եվ որպես նրան պատկանող միակ իրը՝ մահվան տեղեկագրի հետ ուղարկվել էր Բեռլին ու տեղ գտել կոմոդի վերին դարակներից մեկում՝ մի սպիտակ թաշկինակի վրա:

* * *

1921 թիվն էր:

Նոր էր բացվում նոյեմբերյան գորշ առավոտը: Թաց ձյուն էր գալիս: Հրապարակի շուրջը գտնվող տների բակերում սկսվել էր օրվա եռուզեռը:

Խոհանոցում օջախի մոտ մի կին էր կանգնած: Նա պատառաքաղով կարկանդակներ էր որսում եռացող յուղով լի կաթսայից ու հաճախակի խոհանոցի ժամացույցին նայում: Հետո գոգնոցով սրբեց ձեռքերը, վերցրեց կաթսան կրակի վրայից ու գնաց սենյակ: Նա կանգ առավ կոմոդի առջև, կամաց դուրս քաշեց վերին դարակն ու հանեց այնտեղից մի ժամացույց: Սրտի ուժգին բաբախյունը ստիպեց նրան փակել աչքերը:

Սենյակի անկյունում մեծ մահճակալ էր դրված: Կինը ժամացույցը դրեց մահճակալի ծածկոցին:

— Շնորհավորո՜ւմ եմ ծնունդդ, որդի՛ս,— ասաց նա ու համբուրեց տղաներից մեկի ճակատը: Տեսնելով ժամացույցը, պատանին պարզեց ձեռքերն ու զգուշորեն վերցրեց այն:

— Այժմ սա քո ժամացույցն է, Վալտե՛ր,— ասաց մայրը,— դու ես ավագը:

Կինը հագավ բրդյա ժակետը ու դիմեց երեխաներին.

— Խոհանոցում կարկանդակներ կան: Դպրոցից չուշանաք:

Հետո նա արագ դիմեց դեպի դուռը, նորից ետ նայեց, գլխով արեց երեխաներին ու գնաց:

Լսվեց բնակարանի փակվող դռան ձայնը:

Պատանին ժամացույցը ձեռքին բռնած՝ դեռ նստած էր անկողնում: Հետո նա ականջը դրեց ժամացույցի ապակուն: Ժամացույցը կամացուկ թկթըկում էր: Պատանին ոտաբոբիկ վազեց դեպի պատուհանը: Վաղորդյան թույլ լույսի տակ նա թևքով սրբում էր փայլուն մետաղը:

Խոհանոցում աղմկում էին եղբայրները: Վալտերն արագ հագնվեց: Եղբայրներն արդեն նստած էին սեղանի մոտ և ախորժակով ուտում էին ծննդյան օրվա առթիվ պատրաստված կարկանդակները:

Վալտերը նրանց առջևից վերցրեց ամանն ու վեր բարձրացրեց.

— Պետք է բաժին թողնել նաև նրան, ում ծննդյան օրն է:

Հետո վերցրեց իր ժամացույցն ու դրեց խոհանոցի սեղանի մեջտեղը:

— Ժամացո՜ւյցը,— բացականչեցին երեխաները համարյա երկյուղածությամբ:

Վալտերը գլխով արեց:

— Ի՛մ ժամացույցը: Ծննդյանս օրվա նվեր ժամացույցը:

Իսկ ժամացույցը պառկած էր խոհանոցի սեղանին ու չափում էր ժամանակը:

Երեխաները կերան բոլոր կարկանդակները, հետո ափսեի վրա մնացած բոլոր փշրանքները: Իսկ գործարանում կանգնած էր մի կին մամլիչ մեքենայի առջև ու մտածում էր խոհանոցում նստած երեխաների ու նիկելե ժամացույցի մասին:

Դպրոցական օրն սկսվեց: Վալտեր Գրունը նըստած էր իր նստարանին: Եվ երբ նա իր տետրի մեջ թվեր էր գրում, կամացուկ թկթկոց էր լսում տաբատի գրպանից: Նա զգուշությամբ հանեց ժամացույցը գրպանից ու դրեց իր առջև՝ սեղանին: Հետո թաշկինակով սրբեց ապակին: Մեկ էլ ուսուցիչը հայտնվեց նրա ետևում:



— Գրո՛ւն,— գոչեց նա,— սա թվաբանության դաս է:

— Սա իմ ծննդյան նվեր ժամացույցն է,— մրթմրթաց պատանին:

Ուսուցիչը ձեռքն առավ ժամացույցն ու զննեց բոլոր կողմերից: Երեխաները ապշահար նայում էին Վալտերին: Դասամիջոցին բոլորի ուշադրությունը նիկելե ժամացույցին էր գամված: Եվ դասի ժամանակ հաճախ այստեղից ու այնտեղից փսփսոց էր լսվում.

— Վալտե՛ր, ժամը քանի՞սն է:

Վալտերը երջանիկ էր: Եվ երբ օրն արդեն վերջանում էր և փողոցում սկսեցին լապտերներ վառվել, նա գործարանի դարպասի մոտ իր մորն էր սպասում: Ժամացույցը Վալտերը ամուր բռնել էր ձեռքին:

Նույն երեկոյան պատանին մի մեխ խփեց պատին իր մահճակալի գլխավերևը: Այժմ ամեն գիշեր նա իր ժամացույցը կախում էր այդ մեխից և մինչև խոր քուն մտնելը լսում նրա թիկթիկոցը:

Այսպես անցավ նոյեմբերը: Խոնավ ցրտով էր լցնում ձմեռը նեղ բակերը: Շատ վատ տարի էր, դրանից գինն ընկել էր ու աղքատներին ավելի աղքատացրել:

Ցրտահար կանգնած էին երեխաները բակում:

Երկու աղջիկ գնդակ էին խաղում: Հանկարծ երկու երկար ու ձիգ սուլոց լսվեց փողոցում: Աղջիկներից մեկը գնդակը դրեց գոգնոցի գրպանը:

— Պիոներական ազդանշա՛ն է,— գոչեց նա ու ճռապարակով վազեց դեպի կարտոֆիլի պահեստը: Վալտերն ու երեք այլ պատանիներ հետևեցին աղջկան:

Կարտոֆիլի դատարկ պահեստում աղոտ ճրագ էր վառվում: Պատի մոտ գունավոր ծածկոցով սեղան էր դրված:

Սուլոց արձակող պատանին մի նամակ դրեց սեղանին:

— Փոստ Մոսկվայից,— ասաց նա հրճվանքով ու մի պահ լռեց:

Երեխաները հայացքները հառել էին օտար տառերին: Հետո պատանին գրպանից հանեց մի դատարկ թղթե տոպրակ, որի վրա մատիտով ինչ-որ բան էր խզբզված:

— Այստեղ դա թարգմանված է,— ասաց նա ու կարդաց մոսկվացի երեխաների գրածը:

Այսպես Բեռլինի տասներկու պիոներ իմացան Մոսկվայում ապրող սովետական երեխաների ծանր կարիքի մասին: Նույն երեկոյան երեխաները սեղանից վեր մի մեծ ստվարաթղթե տախտակ կախեցին պատից: Եվ մի աղջիկ սպիտակ կավճով գրեց վրան. «Մոսկվայի սովետական երեխաներին ես նվիրաբերում եմ իմ վերարկուն: Կարլա»: Մի սարսուռ ազդող լռություն տիրեց սենյակում:

Բոլորն էլ գիտեին, որ Կարլան միայն մի վերարկու ունի:

— Այդ չեղա՛վ, Կա՛րլա,— ասաց Իլզեն կամաց:— Այդպես դու ի՛նքդ կսառչես:

— Ես ունեմ մի տաք անկողին,— ասաց Կարլան վճռական,— և մի քրդյա ժպտաց:

Երեխաները նորից լռեցին:

— Նրանք հաղթել են սպիտակներին ու ինտերվենտներին, բայց շատ բան նրանց մոտ ավերվել է: Երեխաները վերարկու, կոշիկ չունեն: Հետո էլ վրա հասավ երաշտը ու հազիվ թե հիմա հաց ունենա՞ն,— ասաց Կարլան դանդաղ,— ես այդ իմացել եմ նորից:

Հետո մեկը մյուսի ետևից բոլորը մոտեցան ստվարաթղթե տախտակին և կավիճով գրեցին իրենց անունները Կարլայի գրածի տակ:

Միայն Վալտերն էր կանգնած մենակ:

— Ես վերարկու չունեմ,— ասաց նա խուլ ձայնով:— Մայրս միայն կեսօրյա աշխատանք ունի:

Կարլան ձեռքը դրեց պատանու ուսին.

— Ով վերարկու չունի, չի էլ կարող տալ:

Հետևյալ օրը պիոներները իրենց վերարկուները դասավորում էին արկղի մեջ: Նրանք խնամքով մաքրում էին ամեն մի բիծ: Վերարկուների գրպաններում նրանք եղևնու ճյուղեր ու տերևներ էին դնում: Արկղը կարտոֆիլի դատարկ պահեստում համարյա տոնական տեսք ուներ:

Վալտերը հենված լուռ կանգնած էր արկղի մոտ: Շփոթված, նա վերարկուների մեջ այս ու այն կողմ էր դնում եղևնու ճյուղերը: Կարլան նրան նայեց.

— Մի՛ տխրիր, Վալտե՛ր: Ամեն մարդ կարող է տալ միայն այն, ինչ ունի:

Պատանին խոշոր քայլերով դուրս եկավ պահեստից: Նա արագ սլացավ փողոցով և բացեց իրենց բնակարանի դուռը: Նրա եղբայրները նստած խոհանոցի սեղանի մոտ խաղում էին:

Վալտերը սենյակ գնաց: Նա բացեց պահարանը: Այնտեղ չկար ոչ մի այնպիսի բան, որ նա կարողանար տալ: Պատանին դանդաղ գնաց դեպի



պատուհանը: Նա ձեռքերը տաքատի գրպանը դրեց: Զգաց ժամացույցի սառը մետաղը:

«Ժամացույցը»,— մտածեց Վալտերը:

Նա ձեռնափերի մեջ առավ այն ու երկար նայեց: Հետո ժամացույցը փաթաթեց սպիտակ թաշկինակի մեջ: Տետրակից մի թերթ թուղթ պոկեց ու վրան գրեց. «Ժամացույցը պետք է լարել ամեն առավոտ: Ես վերարկու չունեմ: Ջերմ ողջույններ: Վալտեր Գրուն»:

Պատանին վազեց խոհանոցի միջով, փակեց բնակարանի դուռն ու աստիճաններով ցած սլացավ: Կարտոֆիլի պահեստում պիոներներն արդեն կափարիչն էին հարմարեցնում արկղին: Շնչակտուր, Վալտերը բարձրացրեց կափարիչն ու թաշկինակով փաթեթը դրեց վերևի վերարկուի մեջ:

— Այդ ի՞նչ դրիր մեջը,— հարցրին երեխաները:

— Ժամացույցս,— ասաց պատանին ու դուրս վազեց դեպի դեկտեմբերյան գորշ փողոցը:



Տարիներ անցան: Թվում էր, թե կորավ հին նիկելե ժամացույցի հետքը: Գերմանիայում դեռ իշխում էր ֆաշիզմը: Մեծ պատերազմը, որ ֆաշիստները փաթաթել էին աշխարհի վզին, ետ էր վերադարձել Գերմանիա:

Կարմիր բանակը կանգնած էր Օդեր գետի մոտ և ահեղ կռիվներով օրեցօր առաջ էր գնում դեպի արևմուտք, դեպի Բեռլին:

Եվ դիպվածը մի նոր էջ գրեց հին նիկելե ժամացույցի պատմության մեջ:

Կարմիր բանակի զինվորները ազատագրել էին համակենտրոնացման ճամբարների բանտարկյալների գնացքը, որոնց ֆաշիստները դեպի անտառներն էին ուզում քշել: Մարդիկ հյուծված ու հոգնատանջ նստած էին փողոցի մայթեզրին: Սովետական զինվորները նրանց կաղամբապուր էին տալիս իրենց կերակրամաններով ու զրուցում հետները: Նրանցից հեռու մի պատանի էր նստած բանտարկյալի գծավոր վարտիքով: Նա ձեռքերը դրել էր երեսին ու լալիս էր: Մի ավելի տարեց բանտարկյալ նստած էր նրա կողքին ու ցածրաձայն մխիթարում էր նրան: Նա ձեռքը կարեկցանքով դրել էր պատանու ուսին:

Մի սովետական զինվոր մոտեցավ նրանց: Նա բարձրացրեց պատանու դեմքը.

— Էլ ինչո՞ւ ես լալիս, ընկե՛ր: Հիմա մի նոր, ավելի լավ Գերմանիա է լինելու:

Զինվորը նստեց նրանց կողքին: Նա հանեց իր ծխախոտի քսակն ու ողջ պարունակությունը բաժանեց երկուսի միջև: Հետո գրպանից հանեց մի հին նիկելե ժամացույց.

— Ես հիմա հերթափոխի պիտի կանգնեմ:

Պատանու կողքին նստած բանտարկյալը ուշադիր նայում էր ժամացույցին: Նա վերցրեց այն ու բացեց կափարիչը: Նրա ձեռքերը սկսեցին դողալ: Մարդը վեր կացավ:

— Իմ ժամացույցն է,— ասաց նա սովետական զինվորին,— ես Վալտեր Գրունն եմ:

Սովետական զինվորը տեղից թռավ:

— 1921 թի՞վ,— հարցրեց նա:

Վալտեր Գրունը գլխով արեց:

Նրանք գրկախառնվեցին:

Սովետական զինվորներն ու բանտարկյալի գծավոր հագուստով մարդիկ շրջապատեցին նրանց: Հանկարծ մի պերճախոս լռություն տիրեց այդ գարնանային օրը: Միայն հեռուներից եկող հրետանու համազարկերի ընդմիջումների ժամանակ հին նիկելե ժամացույցի կամաց թկթկոցն էր լսվում:

Նոր ժամանակներ էին սկսվել:



Նորից տարիներ անցան: Հին նիկելե ժամացույցը շարունակում է թկթկալ: Ընկեր Վալտեր Գրունը ուսուցիչ դարձավ: Այսօր նա Մեկլենբուրգի միջնակարգ դպրոցի բարձր դասարաններն է վարում: Եվ նրան շարունակում է սերտորեն կապել մուրմանսկցի Պավել Ալեքսեենկոյի հետ նամակագրությունը, նաև խոր ու անխախտ բարեկամությունը:

*Գերմաներենից թարգմ. ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԸ*



# ՀՈՒՆԻՍԻ ԱՍՏՂԵՐԸ

ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ

Հունիսի աստղերը թռչում են ոսկե
Գիշերների սև ծածկոցի վրա.
Հունիսի աստղերը շշնջում են խոսքեր,
Որ չի հասկանում ոչ մի երեխա:

Հունիսի աստղերը խոտերին թառած
Մրջյունների հետ զրույց են անում,
Նրանց չի լսում երեխան քնած,
Եվ արթուն սիրտը նրանց չի լսում:

Հունիսի աստղերը գետերի վրա
Նետում են ոսկե ուռկանը իրենց,
Սակայն որսալու ոչ մի ձուկ չկա.
Լողում են նրանք երազների մեջ:

Հունիսի աստղերը քամիների հետ
Լացում են մեռած թիթեռի համար
Եվ արցունքն անձրևն թերթն է թրջում,
Որ չիմանան նրանք հանկարծ:

Հունիսի աստղերը հոգնած նստում են
Լեռների վրա, խարույկների մոտ,
Եվ կայծերի հետ թռչում են երկինք
Մեզ բերելու մի նոր առավոտ:

Նկ. [illegible]



*Լրացավ պահեստի գնդապետ, պատերազմի վետերան, ՀՍՍՀ վաստակավոր ինժեներ Արիստակես Սահրադյանի ծննդյան 70-ամյակը: Հայրենական մեծ պատերազմի ահեղ մարտերով անցած, բազմաթիվ շքանշանների ու մեդալների արժանացած գնդապետը 20—30-ական թվականներին եղել է ակտիվ պիոներ աշխատող և շնորհալի մարզիկ:*

*Պատերազմից հետո ընկ. Սահրադյանը վերադարձել է Հայաստան և աշխատել որպես երկաթուղային շինարարության ինժեներ: Երեք մասից կազմված նրա նախագիծ-առաջարկով կառուցվել ու այժմ էլ կառուցվում են տնտեսական մեծ նշանակություն ունեցող երկաթուղիներ, որոնք հանրապետության արդյունաբերական խոշոր կենտրոններն ու ավանները, առողջարաններն ու բնակավայրերը ամենակարճ ու հարմարավետ ուղիներով կապում են իրար:*

*Շնորհավորելով նրան հոբելյանի առթիվ, տպագրում ենք գնդապետի հիշողությունները իր մի հանդիպման մասին, որը կարևոր դեր է խաղացել նրա կյանքում:*

# ՊԱՆԾԱԼԻ ԶՈՐԱՎԱՐԻ ԽՈՐՀՐԴՈՎ

Մի առիթով վերանայում էի իմ անձնական արխիվը և աչքովս ընկավ այս լուսանկարը: Քառասունվեց տարվա վաղեմություն ունեցող լուսանկարը առիթ տվեց հիշելու մի դեպք, որը ուղենիշ հանդիսացավ իմ կյանքում:

Համամիութենական պիոներական հավաքի նախօրյակին՝ 1929 թվականին, Անդրկովկասի պիոներական բյուրոյի նախագահությունը Թբիլիսիում հրավիրեց գավառային, քաղաքային, օկրուգային ու մարզային պիոներբյուրոների նախագահների խորհրդակցություն: Խորհրդակցությունից հետո բոլորս նկարվեցինք:

Մեր պիոներ մարզիկները Մոսկվայի մրցումներում գրավեցին 8 առաջին, 12 երկրորդ, 22 երրորդ տեղեր և Ուկրաինայի թիմի հետ կիսեցին երրորդ-չորրորդ տեղերը:

Հավաքից հետո Կրեմլի սյունազարդ դահլիճում ի պատիվ լավագույն մարզիկների և նրանց ղեկավարների, ճաշկերույթ տրըվեց: Այնտեղ էր հրավիրված նաև քաղաքացիական կռիվների պանծալի հերոս Հայկ Բժշկյանը (Գայ): Նա մեծ հաճույքով լսում էր և շատ բարի խորհուրդներ տըվեց: Նա ինձ առաջարկեց մտնել պինվորական դպրոց և դառնալ հրամանատար:

Հայկ Բժշկյանը գեղեցիկ տղամարդ էր, առնական հրամանատար, և այդ ամենը ինձ վրա մեծ տպավորություն թողեց: Հետևելով նրա խորհրդին՝ պինվորական դարձա, ավարտեցի Մոսկվայի ռազմական ակադեմիան:

Մոսկվայում սովորելու տարիներին մի քանի անգամ հանդիպեցի Հայկ Բժշկյանին: Նա դասավանդում էր պինվորական ակադեմիայում...

Հայկ Բժշկյանի խորհուրդները՝ «Դարձեք պինվորական, սովորեք պինվորական գործը գերազանց, որ հարկ եղած դեպքում ավելի խելացիորեն գործադրեք կենքը և պաշտպանեք մեր սիրելի սովետական հայրենիքը...» ոչ միայն իմ, այլև շատերի կյանքի ուղենիշը դարձան:

Այս նկարի հետ կապված հուշերը շատ-շատ են, և չեմ կասկածում, որ դուք կամ ձեր հայրերն ու մայրերը, իսկ ավելի շուտ՝ պապերը կճանաչեն այստեղ իրենց ծանոթ կամ հարազատ դեմքերին, որոնցից շատերը ընկան ռազմի դաշտում հայրենիքի պաշտպանության համար:

**ԱՐԻՍՏԱԿԵՍ ՍԱՀՐԱԴՅԱՆ**

*Անդրկովկասի պիոներական կազմակերպության նախագահության ընդլայնված պլենումի մասնակիցները:*

*Հոդվածի հեղինակը վերջին շարքում ձախից երկրորդն է:*



# ԳՆԱՄ ԱՆՏԱՌ

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Նկ. ՄԱՐԻՆԵ ՎԱՂԱՐՇՅԱՆԻ

Գնամ անտառ,
Եղբայրանամ մրջյուններին,
Հանգստանամ
Մրրիկների երգերի տակ,
Գնամ ձուլվեմ
Կապո՜ւյտ, կապո՜ւյտ հնչյուններին,
Գնամ ձուլվեմ
Ես ձայներին անհիշատակ:

Ինձ կորցնեմ
Ու ինձ գտնեմ թիթեռների
Փափո՜ւկ, փափո՜ւկ
Թույների մեջ հազարանուն,

Ես ինձ գտնեմ
Բույների մեջ թռչունների.
Ուր աղվամազ
Ձագուկներն են թևեր առնում:

Գնամ ըմպեմ
Ծաղիկներից ցողի կաթիլ,
Որ լացել են
Արծիվները նրանց վրա,
Գնամ ձուլվեմ
Արևներկ մայրամուտին՝
Եղնիկի պես
Խոտերի մեջ դունչը դրած:

# ՁՄԵՌ ՏԱՏԻԿԸ...

ԱՂԱՎՆԻ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Իհարկե, ամենքն էլ գիտեն, որ սովորաբար պապիկներն են դառնում Ձմեռ պապիկ և Նոր տարուն երեխաներին նվերներ բաժանում: Դա մենք էլ գիտեինք: Իմ մասին դեռ չասեմ, որովհետև ես Նանարից ու Քնարից մեծ էի և նրանցից մի քանի անգամ ավելի էի Ձմեռ պապիկից նվերներ ստացել ու լավ հիշում էի, որ նա երկա՜ր, սպիտակ բեղ ու մորուք ուներ: Բայց մեր տան ամենափոքրը՝ Գուցո-Ալպատն էլ կարոտով էր հիշում անցյալ տարվա Ձմեռ պապիկի բերած նվերները: Մանավանդ որ Նոր տարուն արդեն մի քանի օր էր մնում, և մեր փոքրերը իրարանցումով երազում էին, թե այս տարի արդյոք ինչ ու ինչ է բերելու Ձմեռ պապիկը:

Արդեն երրորդ Նոր տարին էր գալիս առանց հայրիկի: Պատերազմը շարունակվում էր, և հայրիկը դեռ ռազմաճակատում էր:

Տարեմուտի օրը մայրիկը եկավ աշխատանքից և ուրախ-ուրախ ասաց, որ տոնածառի չորս տոմս է բերել մեզ համար ու վաղը՝ հունվարի մեկին, գնալու ենք պիոներպալատ տոնածառի:

Որ ասեմ բոլորից շատ ես ուրախացա, սուտ չի լինի: Մյուսներն էլ, իհարկե, ուրախացան: Հա՜յ, հո՜ւյ, աղմուկ, աղաղակ,-բայց մայրիկը կարգադրեց վեր կենալ քնել, որպեսզի հունվարի մեկը շուտ գա: Բոլորս անմիջապես անկողին մտանք: Մյուսների մասին ոչինչ ասել չեմ կարող, իսկ ես մինչև լույս երազիս մեջ տոնածառի շուրջը թռչկոտում էի:

Առավոտյան նորից նույն իրարանցումը: Հավատալս չէր գալիս, թե տոնածառի եմ գնում:

— Տա՛տ, ուրեմն ամոթ չէ՞, որ ես գնամ...— Տատիկն այնքան էր ասել՝ դու մեծ ես, մեծ աղջիկ ես, որ արդեն հավատում էի ու մտածում՝ ամոթ է, որ ես տոնածառի գնամ:

— Ինչո՞ւ է ամոթ, բալա՛ ջան, մի երեխա էլ դու ես:

— Տա՛տ, դու որ երեխա էիր, տոնածառի գնո՞ւմ էիր:

— Որ տանող լինի, հիմի էլ կգնամ:

— Տա՛տ ջան, ես քեզ շատ եմ սիրում...

— Դե լա՛վ, լավ, կեղծավորություն մի՛ արա, երեխեքի շորերը արդուկիր, չուշանաք:

Ուրեմն, այնուամենայնիվ, երեխա չէի ու արդուկ պիտի անեի...

Երբ ամեն ինչ պատրաստ էր ու պիտի գնայինք,

տատիկն ինձ կանչեց ու տոմսերը դրեց ձեռքս.

— Լավ կպահես, չկորցնես, մեջների մեծը դու ես:

Այս անգամ մեծ հայտարարվելը վատ չէր, այդպիսի լուրջ գործ էին հանձնարարում ինձ: Սակայն մեկ էլ Գուշո Ապատը ոտքերը գետին խփելով՝ սկսեց աղմկել, թե՝ տոմսերը ինձ տվեք:

Տատիկն էլ ամեն ինչին կդիմանար, բայց Ապատի լացը տեսնել չէր կարողանում՝ Գուշոյի վրա դողում էր: Ստիպված վիզեց իմ խեղճ տատիկն ու տոմսերը դրեց նրա գրպանը: Մենք էլ նրան շրջապատած գնացինք:

Երբ հասանք պիոներպալատ ու ներս մտանք, միանգամից կարծես թե հեքիաթի աշխարհում հայտնվեցինք: Դահլիճի մեջտեղում՝ շքեղ մի եղևնի, կատարն առաստաղին է հասնում ու ճյուղերից կախկախ հազար տեսակ պարդեր՝ կոնֆետներ, խաղալիքներ, շողշողուն լապտերներ: Բոլորս ուզում էինք մոտենալ շոշափել այդ հրաշք տոնածառը, բայց մեջներիս կտրիճը Ապատն էր, վազեց տոնածառի մոտ ու խենթացած վեր-վեր է թռչում, ուզում է որևէ բան պոկել: Ու կպոկեր, եթե վրա չհասներ մի շատ գեղեցիկ մորաքույր:

— Փոքրի՛կ ջան, չի կարելի,— ասաց նա:— Հիմա մենք բոլորս պիտի խաղանք, պարենք, երգենք, հետո Ձմեռ պապիկը նվերներ կբաժանի:



Ու երգեցինք, պարեցինք, արտասանեցինք: Ես պարում էի, թռչկոտում, ու ոչ ոք ինձ չէր ասում՝ դու մեծ ես, ինձ նման ուրիշ աղջիկներ էլ կային:

Այսպես մի լավ ուրախացանք, հետո էլ ասացին, թե հերթ կանգնեք, Ձմեռ պապիկը հիմա նվերներ է բաժանելու: Հերթ կանգնեցինք, այն գեղեցիկ մորաքույրն էլ եկավ տոմսերն ստուգելու, ու ես հանկարծ հիշեցի մեր տոմսերը.

— Ապա՛տ ջան, տոմսե՛րը...

— Տոմսե՞րը... էն, որ տատը դրեց գրպա՞նս...

— Հա՛, Գուշո՛ ջան, տուր ի՛նձ:

— Որ նվեր ստանանք, չէ՞:

— Հա՛, ապե՛ր ջան:

Ապատը գրպաններն է քրքրում, ամեն գրպանից մի անպետքություն է դուրս գալիս՝ մեխ, գունավոր ապակու կտոր, խցան, ռեզին: Քրքրում է ու փափսում, կարմրատակել է ու հիմա լաց կլինի:

— Գուշո՛ տղա, կորցրե՞լ ես...

— Չէ՛, չգիտեմ ինչ եղա՛վ...

Եվ Ապատս սկսեց տզզալ: Պարզ էր, Նանարն ու Քնարն էլ պիտի ձայնակցեին: Հիմա ես չգիտեմ, նրանց հանգստացնե՞մ, թե՞ իմ արցունքները զսպեմ:

Մեր լացի վրա մոտեցավ այն մորաքույրը, հարցրեց, թե ինչ է պատահել: Ասացինք: Մորաքույրը շատ վշտացավ, քիչ էր մնում ինքն էլ լաց լիներ: Դե լավ, ասաց, մի կողմ կանգնեք, մինչև մյուսներն ստանան, հետո մի բան կմտածենք:

Կանգնել պատի տակ սպասում ենք: Ով նվեր է ստանում, իր փաթեթն խկույն բացում է, ուրիշներին ցույց տալիս, ուրախանում: Մենք խեղճ-խեղճ նայում ենք:

Այսպես նայեցինք, նայեցինք, մինչև բոլորն իրենց բաժինն առան գնացին: Դատարկված արկղները հավաքեցին: Ձմեռ պապին էլ կարծես մեկանից փախչելով, ինչ-որ տեղ չքացավ: Ու տխուր-տխուր մոտեցավ այն մորաքույրը.

— Երեխե՛ք ջան, գիտեք, չէ՞, որ պատերազմ է...

— Հայրիկս գնացել ֆաշիստ է ջարդում,— կտրիճաբար հայտարարեց Ապատը:

— Շատ էլ լավ է անում... Հայրիկը որ գա, շատ նվեր կբերի քեզ համար...

— Քեզ էլ կտամ, մորաքո՛ւյր:

Մորաքույրը շուրթն է նայում, շրթունքներն է կրծոտում ու չի կարողանում խոսել: Ես արդեն հասկանում եմ, որ մորաքրոջ դրությունը ծանր է:

— Մորաքո՛ւյր, իսկ հիմա մեկ ո՞վ է նվեր տալու...

— Գիտե՛ս ինչ, աչո՛ն ջան, այսօրվա նվերները վերջացան, ով տոմս ուներ, ստացավ... ախր մեկ հաշվով էին տվել... ախր պատերազմ է, ուրեմն...

Վիրավորված ու վշտացած եկանք տուն, տեսանք



# ԲԱՐԵ՛Վ, ՍԱՐԵ՛Ր...

ՄԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Սար կա՛ պապ է,
Գլխին՝ միշտ էլ ճերմակ ամպ է,
Կան և փոքրիկ՝ թոռնիկ սարեր,
Որոնք քեզ շատ լավ են լսում:
Փորձիր կանչել՝ բարև՛, սարե՛ր,
Տես արձագանքն ի՞նչ է ասում.
— Արև՛, արև՛...—
Կրկնում է քամին նաև,
Դարձնում է բարևն՝ արև:
Թե պապ սար է,
Լավ չի լսում,
Թե չէ փոքրիկ սարերի պես
Քո բարևին կարձագանքեր.
— Արև, արև...—
«Արև» կա մեր «բարևի» մեջ...



ՆԿ. ՄԱՐԻՆԵ ՂԱԶԱՐՅԱՆԻ

Ահա մի մարդ, որն ավելի քան որևէ մեկը, հավատում էր բարեկամությանը և այն համարում աշխարհիս ամենամեծ բարիքներից մեկը: Գուցե այն պատճառով, որ նա օդաչու էր այն ժամանակներից, երբ ավիացիան դեռ նոր էր սկսել մարդկանց ծառայել, երբ ամեն մի թռիչք անհայտությամբ և տագնապի զգացումով էր ուղեկցվում, և նա սպասման երկար ժամեր ու օրեր էր ապրել: Կամ էլ այն պատճառով, որ նա գրող էր, մա՛րդ, որը բաժանում է ուրիշների հետ իր մտքերն ու զգացմունքները, ուրախությունն ու միայնությունը, գրուցակիցներ որոնելով իր համար երկրագնդի ընթերցողների մեջ: Նա կարծես չէր գրում իր գրքերը, այլ բարձրաձայն մտածում էր: Գրելուց առաջ ամեն երեկո դրանք պատմում էր իր բարեկամներին:

Այդպիսին էր Անտուանը: Սենտ-Էքզյուպերին: Սենտ-Էքզը, ինչպես անվանում էին նրան բարեկամները: Մեծ՝ մեկ մետր ութսունչորս սանտիմետր հասակով, անհոգի մարդ:

Իր բոլոր գրքերը Սենտ-Էքզյուպերին նվիրել է բարեկամներին: «Մարդկանց երկիրը»՝ Գիյոմեին, իր առաջին թռիչքների ընկերոջը: Երբ Գիյոմեի ինքնաթիռը խրվել մնացել էր Անդերում, հինգ ցերեկ և չորս գիշեր օդաչուն մաքլցում



Մաքրուխ դուդուն մեկ մոտ է: Պատմեցի մեր գլխով անցածը: Տատիկն ասաց՝ վնաս չունի, մի օր էլ մեր տանը հարսանիք կլինի: Թե ինչ հարսանիք պիտի լիներ, չհասկացա: Մաքրուխ դուդուն էլ ասաց՝ խորեմ էդ Ձմեռ պապեի գլուխը, ու վեր կացավ:

— Հիմի կերթամ էդ, խորած հալևորին ցույց կուտամ: Աղջի Շողե՛ր, արի՛ քեզ բան ասեմ...

Տատիկի հետ դուրս եկան, հետո տատը մենակ վերադարձավ:

Արդեն երեկո էր, մեկ էլ մայրիկը վեր կացավ, թե՝ երեխաներ, եկեք տունը հավաքենք, կարգի բերենք, հիմա մեկ հյուր է գալու:

— Ո՞վ, մա՛, ո՞վ է գալու...

— Տատը կգնա կբերի, կտեսնեք:

Տատը գնաց, մենք լուսամուտները քողարկեցինք, մեր վրա-գլուխը հարդարեցինք: Մի փոքրիկ, քնձոտ եղևնու ճյուղ էր բերել մայրիկը, դրա վրա մոմեր վառել, ուրախանում էինք:

Քիչ հետո մի փոքրիկ, ծիծաղելի բեղ ու մորուքով ծերուկի թևը բռնած՝ ներս մտավ տատիկը:

— Մաքրուխի մոտ էի գնում, տեսնեմ էս բիձեն սրան-նրան հարցնում է, թե որն է Գուջո Ալատի տունը: Ախպե՛ր ջան, ասում եմ, չլինի՞ դու Ձմեռ պապին ես: Հա՛, բա՛, ասում է, Ալատի տունն եմ գնում..

Այնքան էինք ուրախացել, որ ոչ մեկիս մտքով չանցավ, թե ախր սա բոլորովին էլ նման չէ պիոներպալատի Ձմեռ պապիկին:

— Ջա՜ն, ջա՜ն, Ձմեռ պապիկն ինձ մոտ է եկե՛լ,— ծափ տվեց Ալատն ու այնպես թափով փաթաթվեց ծերուկին, որ խեղճը քիչ մնաց գլորվի:




*Ի. ԱՆԴՐԵՅԵՎԱ*

*Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ*

էր ձյունապատ գագաթներով, առանց պարանի և կացնի, առանց ուտելիքի, քառասուն աստիճան ցրտի մեջ: Ամենից շատ նա ուզում էր չշարժվել, բայց գիտեր, որ դա դավաճանություն է հարազատների, ընկերների նկատմամբ, նրանց նկատմամբ, ովքեր իրեն սպասում են: Իսկ Էքզյուպերին այդ ընթացքում պտտվում ու պըտտվում էր լեռների անվերջանալի կույտի վրայով, փորձելով ձյան մեջ գտնել ընկերոջը:

— Ես քեզ տեսնում էի,— հետո կասի Գիյոմեն:

— Ինչպե՞ս իմացար, որ այդ ես եմ:

— Էլ ո՞վ կխիզախեր թռչել այդքան ցածր:

«Մարդկային մոլորակ» վիպակը Էքզյուպերին նվիրել է 1939—1940 թվականների մարտական թռիչքների ընկերներին, իսկ «Փոքրիկ իշխանը» հեքիաթը՝ իր բարեկամ գրող Լեոն Վերտին:

«Խնդրում եմ երեխաներին ներել ինձ, որ այս գրքույկը ես մեծահասակ մարդու եմ նվիրել,— կգրի նա հետագայում:— Որպես արդարացում ասեմ, որ այդ մեծահասակը իմ ամենալավ բարեկամն է: Եվ հետո՝ նա ամեն ինչ հասկանում է աշխարհում, նույնիսկ մանկական գրքերը: Եվ վերջապես, նա ապրում է Ֆրանսիայում, իսկ այնտեղ հիմա ցուրտ է ու սով, և նա շատ կարիք ունի մխիթարանքի»:

Սենտ-Էքսն այնպես էր հավատում բարեկամության ուժին, որ նրան թվում էր, թե եթե ինքը մտածում է Վերտի մասին, եթե կարողանա ձայն տալ նրան հազարավոր կիլոմետր հեռավորությունից, կարիքի ու վշտի միջով՝ ես նույնն եմ, քեզ հետ եմ, հիշում եմ քեզ, շուտով կգամ օգնության, ապա իր բարեկամն իրեն լավ կզգա:

Երբ Սենտ-Էքզյուպերիի ինքնաթիռը վթարի ենթարկվեց ամենաչարանենգ Լիբիական անապատի խորքերում, որտեղ տասնհինգ ժամից հետո մարդիկ ծարավից մեռնում են, նա և մեխանիկ Պրևոն երեք օր դիմացան: Ոչ թե դիմացան, այլ հուսահատ ճիգեր էին թափում փրկվելու, կենդանի մնալու համար, որովհետև մտածում էին այն մարդկանց մասին, որոնց իրենց մահը վիշտ կպատճառեր: «Մահն այնպիսի՜ դավաճանություն է»,— բորբոքված ասել էր Սենտ-Էքզյուպերին:

Հենց այդտեղ, Լիբիական անապատում, նա առաջին անգամ սկսեց մտածել իր ապագա հեքիաթի հերոսների՝ Աղվեսի և Փոքրիկ իշխանի մասին: Այդ հեքիաթը լի է դառնությամբ, ինչպես անջուր անապատում, և թերևս դա մանուկների համար գրված ամենատխուր հեքիաթն է: Իսկ ինքը՝ Սենտ-Էքսը լի էր կյանքով և ուրախ հետաքրքրությամբ էր դիտում այն ամենը, ինչ կար երկրի վրա: Ծարավից տոչորված, օրական վաթսուն կիլոմետրանոց ուժասպառ անցումներ կատարելով, նա տեսավ ավազի վրա խոշորականջ աղվեսի՝ Ֆենեկի հետքերը և հետաքրքրությամբ սկսեց կարդալ նրա պարզ կյանքի պատմությունը. ահա գազանիկը վազում է թեթև վարգով՝ լիզելով քարերի վրա իջած վաղորդյան ցողի կաթիլները, ահա հանդիպել է ընկերոջը... Իսկ ինչպի-

— Հապա ինչպե՞ս, քո մոտ կուգայի,— ասաց Ձմեռ պապիկը:

Ա՜յ թե Նոր տարի արինք: Ով ինչ շնորհք ուներ, ցույց տվեց: Նույնիսկ մայրիկը «Զախորդ օրեր» երգեց, որ հայրիկիս սիրած երգն էր, ու տատիկի աչքերը լցվեցին: Հետո Ձմեռ պապիկն ու տատը մի-մի գավաթ գինի կոնծեցին, Ձմեռ պապիկն ասաց՝ բուռն է: Այ քեզ բա՛ն, մտածեցի ես, սա իսկական մեր Մաքրուխ դուդուի նման է խոսում...

Ձմեռ պապին հոգնած-հոգնած գնաց նստեց այն աթոռը, ուր սովորաբար նստում է Մաքրուխ դուդուն ու մորուքը շփելով ասաց.

— Աղջի Շողե՛ր, էնա բաներ բե՛ր, տանք ձերուն...

— Վա՛յ, Մաքրուխ դուդո՛ւն,— բղավում եմ ու փաթաթվում նրան... Ես վաղուց գիտեի, որ դու ես, Մաքրուխ դուդու ջա՛ն...

Բոլորը ծիծաղում են, բղավում, թափվում են խեղճ Մաքրուխ դուդուի վրա, մորուքն են քաշքշում:

— Մաքրո՛ւխ դուդու, բա էս մորուքը քեզ ո՞վ տվեց...

— Քո տունը շինվի,— ծիծաղելով ասում է տատիկը,— հազար անգամ խրատեցի, թե գոնե էսօր երեխայո՛ւ պես խոսա, քո վանեցերենը մեջ մի՛ գցի:

— Համենայն դեպս, խաբեցի,— պարծեցավ Մաքրուխ դուդուն ու մորուքը պոկեց:— Չեմ հասկնա, թե հայկորները ինչպես կդիմանան էս մորուք-բեղերաց:

Մի խոսքով, համենայն դեպս, Ձմեռ պապիկ-Մաքրուխ դուդուն մեկ կարգին ուրախացրեց:

սի՞ իմաստությամբ ու խնայողությամբ է նա վերաբերվում իր «մոլորակային պանդխտին» չոր թփերին՝ փոքրիկ խեցիները ճյուղերից կախված: «Իմ փոքրիկ աղվեսիկ, ես կորած եմ... բայց դա ինձ չի խանգարում հետաքրքրվել քո կյանքով, քո սովորույթներով»: Այո՛, նա ամենատխուր հեքիաթը գրեց երեխաների համար, բայց ինքը ուրախ մարդ էր: Սենտ-Էքսը հիանալի ֆոկուսներ էր ցույց տալիս, նա սիրում էր զարմացնել: Վարակիչ ծիծաղ ուներ և սիրում էր կատակել: «Անապատ գնալիս,— ասում էր նա,— հետներդ մաղ վերցրեք: Ավազը մաղեք: Բոլոր ադամանդները կմնան մաղի մեջ»:

Նրա մասին հիշողությունները թողած բարեկամները միաբերան պատմում են, թե ինչպես Սենտ-Էքսը աֆրիկյան մի ցեղից գնել է գերի ընկած մի մարդու՝ Բարկին: «Մարդկանց երկիրը» գրքում նա ինքն է պատմում Բարկի պատմությունը: Նրա համար այդ պատմության մեջ ամենագլխավորը, հուզիչը այն մոմենտն է, երբ Բարկն իրեն ազատ է զգում: Եվ գիտե՞ք ինչպես է դա տեղի ունեցել: Իսկապես, Էքզյուպերին ետ գնեց Բարկին, իսկ մյուս օդաչուները Բարկի համար փող հավաքեցին, որպեսզի տուն՝ իր ընտանիքը վերադառնալով, նա կարիքի մեջ չընկներ: Բայց փոքրիկ քաղաքի փողոցներում Բարկը տեսավ աղքատ և կեղտոտ արաբ երեխաների ու նրանց համար ոսկյա թելով կարված հողաթափեր գնեց: Լսելով այդ առատաձեռնության մասին, քաղաքի բոլոր փողոցներից նրա մոտ վազեցին ուրիշ երեխաներ, և բոլորի համար նա նույնպիսի հողաթափեր գնեց: Հիմա նա իրեն ազատ և երջանիկ էր զգում, կարող էր նվերներ գնել, ուրիշներին երջանկացնել, իր շուրջը ժպիտներ ցանել: Այս պատմությունը Սենտ-Էքսի բնավորությունն է բացահայտում, նա իրեն երջանիկ էր զգում միայն այն ժամանակ, երբ շրջապատողներին նվերներ էր տալիս:

Նա սիրում էր թռչել, և իր ինքնաթիռը. հինգ մատի պես գիտեր: Ինքնաթիռի խուցը որևէ բարեկամի ցույց տալիս, նրա



ձայնի մեջ այնպիսի մանկական հպարտություն էր զգացվում, երբ ասում էր. «Գիտե՞ք ինչքան բան կա այստեղ: Հարյուր քառասունութ մաս: Մատով հպեք ուզածդ սարքին, և ես ձեզ անմիջապես կբացատրեմ ինչն ինչով է»: Նա սիրում էր ամեն ինչ կատարելագործել: Սենտ-Էքսը ութը արտոնագրված գյուտարարություն ուներ, այդ իր գյուտարարություններից ամենից շատ նա հպարտանում էր նրանով, որ գլխի էր ընկել սապնալուծույթի մեջ գլիցերին ավելացնել, որով սապոնի պղպջակները այլևս չէին պայթում, այլ ետ էին ցատկում պատերից՝ խոշոր, ծիածանագույն փայլուն գնդակների տեսքով: Փոքրիկ աղջնակը, որի հետ մեկտեղ նա պղպջակներ էր բաց թողնում, էլ չէր վշտանում, որովհետև այդ պղպջակները այլևս չէին պայթում: Երբ նրա կողքին որևէ մեկը վշտանում էր, Սենտ-Էքսն իրեն դժբախտ էր զգում:

Նա սիրում էր երեխաներին, իր ինքնաթիռը, ուրախ կատակներ, գազանիկներ (Սահարայում վիթեր էր ընտելացրել, Հարավային Ամերիկայում՝ կատվառյուծ, Ֆրանսիա առյուծի ձագ էր բերել): Սակայն ամենից շատ նա սիրում էր այն նուրբ (և ամուր, ամենաամրին ճոպաններից ու պարաններից ամուր) կապերը, որոնք կապում են մարդկանց իրար: Ի՞նչ հիանալի է, իսկապես, մտածում ես, որ հենց Էքզյուպերին առաջին փոստային օդաչուներից մեկն էր Եվրոպայում: Եվ ինչպե՞ս է դա նրան սազում:

Մեր ժամանակներում ավիափոստով նամակ ուղարկելը ուշադրություն չգրավող մանրուք է: Նրա վրա վեցկոպեկանոց նամականիշ փակցրեք, և ծրարը ձեր ողջույնը կհասցնի աշխարհի ուզած վայրը: Իսկ Սենտ-Էքզյուպերիի երիտասարդության տարիներին նամակները սարսափելի երկար ճամփա էին



կտրում, ուղղակի աչքի առաջ հնանալով, նրանք գնում էին գնացքներով, շոգենավերով, ձիերի և ուղտերի վրա բարձված: Այն տարիներին դեռ նոր էին մտածում փոստը ինքնաթիռով տանել: Այսպիսի ճանապարհորդությունը վտանգների հետ էր կապված, և այն էլ ինչպիսի՜ վտանգների: Նամակները ֆանտաստիկ արկածների էին հանդիպում: Մի՛ մոռացեք, որ օդաչուները՝ նույնպես: Ինքնաթիռները մի շարժիչ ունեին, տեխնիկական ցածր հնարավորություններ, անհուսալի կառավարում: Նրանք ջախջախվում էին լեռներում, անապատում, ընկնում էին ծովը: Աֆրիկայի խռովարար քոչվոր ցեղերը օդաչուներին գերի էին վերցնում (բայց չէ՞ որ 1926 թվականն էր արդեն): Դեռ լավ էր, եթե նրանք համաձայնվում էին գերիներին ետ տալ մեծ փրկագնով...

Այսպիսով՝ ամեն ինչը առաջին անգամ: Գիշերային թռիչքները՝ առաջին անգամ: Օվկիանոսի վրայով թռիչքները՝ առաջին անգամ: Առաջին անգամ էին ուսումնասիրվում նաև լեռնաշղթաների միջով անցումները. այն տարիների օդանավը լեռներից բարձր թռչել դեռ չէր կարողանում: Արժե՞ր ամեն օր կյանքը վտանգի ենթարկել ինչ-որ նամակների համար:

Օդաչուները մտածում էին, որ իրենց տեղափոխած նամակների մեջ կգտնվի գոնե մեկը, որը ինչ-որ մեկին լույս, օգնություն, սիրո խոսք է տանում կամ փարատում է մեկի վիշտը: Չգիտեմ ինչու, ինձ թվում է, թե այդպիսի նամակի գոյության միտքը Սենտ-Էքզյուպերիին է պատկանում: Դա նրա միտքն է:

«Ես լավ գիտեմ, թե ինչու եմ նացիզմն ատում,— գրում էր նա 1942 թվականին:— Առաջին հերթին նրա համար, որ այն կործանում է մարդկային հարաբերությունները... Ես տարիներով ապրեցի անապատում, գրկանքներով լի կյանքով, և երջանիկ էի՝ այնտեղ ես հավատարիմ ընկերներ ունեի»:

Այն տարիներին, երբ նրա հարազատ Ֆրանսիան գտնվում էր գերմանական զավթիչների տիրապետության տակ, իսկ ինքը ռազմական օդաչու էր դարձել, նա կանխատեսում էր պատերազմի վախճանը, գերմանական ֆաշիստների ջախջախումը, և այնուամենայնիվ սարսափով էր մտածում մարդկության ետպատերազմյան ապագայի մասին, չէ՞ որ ֆաշիստների կողմից ավերված մարդկային հարաբերությունները դժվար կլինի վերականգնել, մարդկանց հոգիները կոպտացած կլինեն պատերազմից, ատելությունից: Նա ինքը երբեք չէր ամաչում քնքշությունից, սիրուց, առանց քաշվելու արտահայտում էր իր զգացմունքները, իսկ պատերազմի տարիներին՝ հատկապես. ահա մորը գրած նամակներից մեկը:

«Թանկագին մայրիկ.
Գրում եմ ձեզ, թուղթը պահած ծնկներիս վրա, որովհետև ռմբակոծություն է սպասվում: Այնքան կարիք ունեմ ձեր քնքշության, սիրելի մամա: Սարսափելի է մտածել, որ ինչ թանկ է ինձ համար այս երկրագնդի վրա, գտնվում է վտանգի տակ: Սակայն պատերազմից ավելի ինձ սարսափեցնում է վաղվա աշխարհը: Քանդված գյուղեր, բաժանված ընտանիքներ, մահ. այս բոլորը դեռ ոչինչ, բայց ես չէի ուզենա, որ պատերազմը ոչնչացներ մարդկանց հոգեկան կապերը, հոգեվոր արժեքները...»

Հենց այս շրջանում է, որ Էքզյուպերիի թռիչքային թերթիկների վրա սկսեցին երևալ նկարներ, որոնք շուտով «Փոքրիկ իշխանը» հեքիաթի հետ տարածվեցին աշխարհով մեկ:

— Ինչո՞ւ եք դուք միշտ ինչ-որ երեխա և թիթեռնիկներ նկարում,— հարցնում էին նրան օդաչուները:

«Փոքրիկ իշխանը» Սենտ-Էքզյուպերիի կտակն է: Նա թողել է այն աշխարհի բոլոր երեխաներին, մտածելով մարդկանց երկրի հետպատերազմյան ճակատագրի մասին: Ահա՛ թե ինչ-

սիրտ պատասխանատվություն է դրել նա ձեզ վրա, սիրելի՛ երեխաներ: Ինչո՞ւ հենց երեխաների: Ըստ երևույթին, նրան թվացել է, թե երեխաները դեպի իրենց հասուն կյանքը, դեպի իրենց ապագան պետք է տանեն սիրելու իրենց կարողությունը, բարեկամության նկատմամբ հավատարմությունը, իրենց կենդանի զգացմունքները, հավատարիմ և լավ ընկեր ունենալու այրող ցանկությունը, որի կարիքն այնքան զգում են երեխաները մանավանդ իրենց մանկության տարիներին: Նա ուզում էր, որ յուրաքանչյուր մարդ դեռ վաղ հասակից պատասխանատվություն զգա նրանց նկատմամբ, ում սիրում է: Նա երեխաների հետ խոսում էր այն ամենի մասին, ինչ նրան տագնապ էր պատճառում, և խոսում էր իր իսկական ձայնով: Ահա թե ինչու հեքիաթն այդքան տխուր և այդքան առեղծված է ստացվել: Այնքա՞ն դժվար է այդ հեքիաթը պատմել: Ինչի՞ մասին է այն: Պատմենք Էքզյուպերիի խոսքերով. «Կար-չկար մի փոքրիկ իշխան կար, որն ապրում էր մի մոլորակի վրա: Նրա մոլորակն այնքան փոքր էր, որ հազիվ էր նրան տեղավորում: Փոքրիկ իշխանը շատ էր ուզում ընկեր ունենալ...»

Եվ ահա մի օր չգիտես որտեղից մի սերմ էր ընկել մոլորակի վրա և ծիլ էր: Փոքրիկ իշխանը ուշադիր հետևել, խնամել էր ծիլը: Մի գեղեցիկ օր իր թերթերն էր բացել չքնաղ մի վարդ, որին նայելուց չէիր կշտանա: Բայց նա կամակոր էր, վախենում էր միջանցիկ քամիներից և խնդրեց իրեն ծածկել, միաժամանակ պարծենալով, որ չի վախենում վագրերից. չէ՞ որ ինքը չորս փուշ ուներ: Կարող է պատահել, որ փոքրիկ իշխանը նեղացավ վարդից. համենայն դեպս նա գնաց ուրիշ մոլորակների վրա ճամփորդելու...

— Ես հիմար էի,— ասաց նրան վարդը հրաժեշտի ժամին:— Ների՛ր ինձ և երջանիկ եղիր:

Համարյա մեկ տարի ճամփորդեց փոքրիկ իշխանը ուրիշ մոլորակներում: Նա շատ հետաքրքիր բաներ տեսավ: Երկրագնդի վրա տեսավ բազմաթիվ վարդեր, որոնք նույնքան գեղեցիկ էին, որքան իր ընկերուհին: Աղվեսը, որին նույնպես նա հանդիպեց երկրագնդի վրա, նրան մի գաղտնիք բացահայտեց: «Դու ինձ համար մի փոքր տղա ես, հարյուր հազար ուրիշ փոքր տղաների պես: Ես քո կարիքը չեմ զգում, դու էլ իմ կարիքը չես զգում,— ասաց իմաստուն Աղվեսը:— Բայց եթե դու ինձ ընտելացնես, մենք կզգանք միմյանց կարիքը: Դու ինձ համար կլինես միակը աշխարհում: Ես քեզ համար աշխարհում միակը կլինեմ»:

Աղվեսը նաև ասաց. «Պետք է տեսնել միայն սրտով: Ամենակարևորը աչքի համար անտեսանելի է»:

Աղվեսն ավելացրեց. «Դու միշտ պատասխանատու ես նրա համար, ում ընտելացրել ես: Դու պատասխանատու ես քո վարդի համար»:

Փոքրիկ իշխանը տխրեց իր լքած վարդի համար: Երկրի վրա աճած գեղեցկուհի վարդերին նա ասաց. «Դուք բոլորովին նման չեք իմ վարդին... Իհարկե, իմ վարդը բոլորից թանկ է ինձ համար, որովհետև նրան ես եմ ջրել, ես եմ պահպանել, որովհետև նրան ես եմ պատսպարել հողմարգելով, նրա գանգատները ու պարծենկոտությունը ես եմ լսել, ես եմ տեսել նրա լռությունը...»

Նա որոշեց վերադառնալ իր ընկերուհու մոտ, իսկ դա այնքան էլ հեշտ բան չէր: Իշխանի մարմինը ծանր էր, և նա չէր կարող այն բարձրացնել մինչև իր մոլորակը: Նա պայմանավորվեց անապատի օձի հետ, որ իրեն խայթի: Ուղիղ մեկ տարի հետո այն օրվանից, ինչ նա հեռացել էր իր մոլորակից, եկավ երկրի ճիշտ այն վայրը, որտեղ իջել էր: Նա սարսափում էր օձի խայթոցից, բայց նրան սպասում էր իր վարդը:

Ամեն անգամ, երբ կարդալով հասնում եմ գրքի այս տեղին, ես նույնպես սարսափում եմ, կարծես տեսնում եմ օձի արագ փայլկոտը և խայթը ու հիշում եմ փոքրիկ իշխանի խոսքերը, թե սա միայն նման է մահվան, բայց այնքան նման, որ ամեն անգամ կարդալիս ուզում ես լալ: Համենայն դեպս, ոչ ոք այլևս երկրի վրա չտեսավ փոքրիկ իշխանին: Նա անհետացավ: Սենտ-Էքզյուպերին նկարել է այն տեղը՝ անապատում, որտեղ անհետացավ փոքրիկ իշխանը:

Սակայն ոչ ոք մինչև հիմա չգիտե, թե ուր անհետացավ Էքզյուպերին: 1944 թ. հուլիսի 31-ին հետախուզական թռիչքի մեկնեց: Ուրախ էր, որ թռչում է Անեսիի լճի շրջակայքը, որտեղ անցել էր իր մանկությունը: Ուրախ էր, որ թռչում է, որովհետև նրան երկար ժամանակ չէին թույլատրում թռչել: «Լայտնինգ» ինքնաթիռներով թռչում էին երիտասարդ օդաչուները, դրանք շատ արագընթաց մեքենաներ էին, իսկ Էքզյուպերին արդեն 44 տարեկան էր: Նշանակն այդ [illegible] էր, նա կարող էր [illegible] անամ երկնքի [illegible]: Սակայն նա չվերադարձավ ոչ այդ և ոչ էլ մյուս օրերին: Ընկերները երկար սպասում էին նրան օդանավակայանում: «Մահն այնքա՞ն դավաճանություն է»: Արդյո՞ք նրան ֆաշիստական որևէ մի ինքնաթիռ կործանեց: «Լայտնինգը» անզեն ինքնաթիռ էր, նրան կարող էր փրկել միայն նրա արագընթաց լինելը: Էքզյուպերիի ինքնաթիռը ծո՞վն ընկավ, խրվեց մնաց լեռներո՞ւմ: Ոչինչ հայտնի չէ: Նա անհետացավ, ինչպես անհետացավ փոքրիկ իշխանը:

Բայց, իհարկե, այդպես չէ: Կենդանի են նրա գրքերը, նրա մտքերը, ցանկությունները: Սենտ-Էքզը այսօր էլ դրանք նվիրում է մեզ, զարմացնում է, ուրախացնում: Իսկ նրա գրքերը ճամփորդում են մարդկանց երկրով, ինչպես անվանում էր նա մեր մոլորակը, և շարունակում են միավորել մարդկանց. չէ՞ որ մարդկանց միավորելը նա կյանքում ամենակարևորն էր համարում:

*Թարգմ. ԱՂԱՎՆԻ ՍԱՆԱՍՅԱՆԻ*



# ՌՈԲՈՏԸ ՉԻ ՍՊԱՍՈՒՄ

*ՀԱՅԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*

Արդեն շատ երկար ժամանակ է անցել իմ ու այս մոլորակի հանդիպման օրից: Մեր հանդիպումը տեղի ունեցավ անսպասելիորեն, և այն ժամանակ ես նույնիսկ զարմացա, որ նրա մասին մի տող անգամ չկար ոչ մի աստղային տեղեկագրում: Ճիշտն ասած, ես ամենանվազագույն ցանկություն չունեի նոր մոլորակ հայտնաբերելու: Պարզապես մի օր իմ աստղանավը գտավ նրան ու վայրէջք կատարեց: Առանց երկար-բարակ մտածելու, հայտնագործողի իմ իրավունքով նրան անվանեցի Գորշ Վիշտ: Մոլորակն իրոք որ գորշ էր, իսկ վիշտն իմն է. ես այլևս չհեռացա այդ մոլորակից: Աստղանավը չկարողացավ լքել իր գտած մոլորակը: Իսկ մարդկանց դա միշտ էլ հաջողվում է:

Սա շատ հին պատմություն է: Այդ հանդիպումից արդեն հազարավոր, գուցե և միլիոնավոր տարիներ են անցել: Չգիտեմ: Որտեղի՞ց իմանամ: Այս Գորշ Վիշտը չափազանց տարօրինակ է, նա իր համար և՛ մոլորակ է, և՛ աստղ, և՛ տիեզերք, և՛ ամեն ինչ: Միայն շատ հեռվում այլ աստղեր են երևում: Դա արդեն մեր Տիեզերքն է, մեր աստղերը, որոնց հետ ծանոթ էի շատ վաղուց: Այս մոլորակն ամենևին չի հետաքրքրվում մեր Տիեզերքով. Նա ապրում է իր համար, միայն իր համար: Դրա համար ես ատում եմ նրան...

Հիմա ինձ տարօրինակ - է թվում, բայց առաջին հազար տարին արագ անցավ, նույնիսկ աննկատ: Այն ժամանակ մոլորակում այնքա՜ն հետաքրքիր բան կար, և ես համարյա ամեն օր հաճույքով զրուցում էի ռոբոտի հետ: Սակայն ինձ ամենից շատ դուր էր գալիս նրան ծաղրելը: Ես ծաղրում էի նրա լայն-լայն չռված աչքերը, նրա գրած բանաստեղծությունները, նրա խոսելու ձևը: Նա նեղանում էր ինձանից ու ամեն անգամ նորից ու նորից սկսում բացատրել, որ ուրիշին ծաղրելը լավ չէ, որ ես իրեն հանդիպած մարդկանցից քաղաքավարի եմ, որ ինքը չափազանց խելոք է և կարող է մեկ վայրկյանում տասը հազար անհայտով նույնքան հավասարումների սիստեմ լուծել:

Առաջին հազար տարվա ընթացքում ես հասցրի նայել աստղանավի բոլոր ֆիլմերը, կարդացի բոլոր գրքերը, քայլեցի մոլորակի բոլոր հովիտներով ու սարերով, լեռներով ու կիրճերով, ես ոտնատակ տվի ամբողջ մոլորակը:

Սակայն մի օր էլ սարսափով նկատեցի, որ այլևս զբաղվելու ոչինչ չունեմ: Հենց այդ ժամանակ էլ հասկացա, որ անմահ եմ դարձել, որ մոլորակն իմ ազատության դիմաց ինձ անմահություն է վճարել: Ես վախեցա, ուրախացա, խելագարվեցի և, երբ վերջապես ուղեղիս մեջ ամեն ինչ իր տեղը գտավ, ես այդ գաղտնիքը հայտնեցի ռոբոտին: Նա անմիջապես հայտարարեց, որ այդպիսի բան հնարավոր չէ:

— Ո՞վ ասաց, որ հնարավոր չէ,— արհամարհան-



քով նետեցի ես: — Պարզապես դու բութ ես, և քո մետաղե ուղեղն ընդունակ չէ նման բան հասկանալու... Դու չափից դուրս սահմանափակ ես: Դու չես կարող վճռել տասը հազար հավասարումը տասը հազար և մեկ անհայտների նկատմամբ, ա՛յ թե ինչ,— ես սկսեցի ծիծաղել նրա վրա:

Նա որոշեց ինձ զարմացնելու համար այդ խնդիրն էլ լուծել, բայց չկարողացավ: Նա տանջվեց ևս մի քանի րոպե և կրկին պնդեց, որ մարդիկ անվերջ ապրել չեն կարող, և ես վաղ թե ուշ մեռնելու եմ:

Ես բարկացա նրա վրա ու առանց հրաժեշտ տալու հեռացա: Նա ձայն տվեց իմ ետևից և զգուշացրեց, որ հանկարծ չխաբվեմ ու շարունակեմ ապրել: Որոշեցի այլևս երբեք նրա մոտ չվերադառնալ...

Վերադարձա միայն հարյուր տարի անց, և նա շատ զարմացավ ինձ ողջ տեսնելով: Հետո սկսեց հավատացնել, որ ես ճիշտ չեմ վարվում, որ մարդը չի կարող անվերջ ապրել: Ես կրկին սկսեցի ծաղրել իմ ռոբոտին:

Սակայն այս ամենը վաղուց էր, շատ վաղուց, և այն ժամանակ ես դեռ հավատում էի, որ մի օր կփրկվեմ Գորշ Վիշտ մոլորակից:-Իսկ հետո ես շատ նոր բան իմացա, ես արդեն գիտեի, որ ամեն ինչին հասնելը սարսափելի է՝ մահվան նման մի բան: Հասկացա, որ յուրաքանչյուր մարդ, ամեն մի իր, որ կհանդիպի այս անիծյալ մոլորակին, այլևս չի կարող հեռանալ նրանից: Նա ստիպված կլինի ընդունել մոլորակի տված անմահությունն ու դրա փոխարեն իրենով վճարել: Ես գիտեմ նաև, որ առաջին խաբվողը չեմ եղել, եղել են ուրիշները ևս, որոնց ձանձրացրել են անմահությունն ու սպասումը: Նրանք իրենք են դրել վերջակետը: Նրանք այս մոլորակի երեսին են շպրտել նրա տված անմահությունը, և մոլորակը ծիծաղել է, որովհետև խաբել է նրանց...

Հիմա ես ռոբոտին հանդիպում եմ մի քանի հարյուր տարին մեկ անգամ: Նա ամեն անգամ հավատացնում է, թե իմ ապրելը սխալ է, որ ես պետք է մեռնեմ, իսկ ահա արդեն մի քանի հազար տարի է, ինչ նա նոր բան է հայտնագործել.

— Միևնույն է, դու այլևս երբեք չես ընկնի Մարդկանց Մեծ Հասարակության մեջ: Նշանակում է դու գոյություն չունես...

Բայց ես խոսում եմ քեզ հետ:

— Դա ի՞նչ նշանակություն ունի: Դու չկաս:

— Մեռած մարդիկ չեն խոսում:

— Դա էլ ոչ մի նշանակություն չունի...

Ես այս մոլորակում աստղանավակայան եմ կառուցել, որտեղ ամեն ինչ պատրաստ է նորեկներին դիմավորելու համար:

Քայլում եմ աստղանավակայանի ուղղությամբ: Դեռ հեռվից նկատում եմ, որ ինչ-որ աստղանավ է իջնում: Ես չեմ հավատում աչքերիս, քիչ է մնում խելագարվեմ: Սկսում եմ վազել ու գոռալ: Ողջունում եմ նրանց, հետո բղավում եմ, թե անմահ եմ, զգուշացնում եմ վայրէջք չկատարել, որովհետև հետո այլևս հեռանալ չեն կարող: Միևնույն նախադասությունները կրկնելով վազում եմ ու մտածում, որ վերջապես կլսեմ, կտեսնեմ՝ կզգամ մարդուն, վերջապես ռոբոտից ու աստղերից բացի, նոր զրուցակից կունենամ: Վազում եմ ու հաճախակի նայում աստղերին, հանկարծ նոր աստղանավ չհայտնվի, աստղանավակայանում միայն մի նավ կարող է վայրէջք կատարել: Բարկանում եմ, որ ավելի մեծ կայան չեմ կառուցել: Քրտնել եմ, ճակատս այրվում է խանձող տաքությունից, աչքերս արցունքոտվում են, ականջներիս մեջ միալար աղմուկ է:

Աստղանավակայանի մուտքը փակող լեռան մոտ բոլորովին ուժասպառ եմ լինում, ոտքերս դողում են, իսկ սիրտս աշխատում է համարյա եռակի արագությամբ: Ես բարձրանում եմ բլուրն ի վեր ու աղաչում, որ մարդիկ չգնան, մի քիչ սպասեն: (Իսկ կայանում «Բարի ճանապարհ» չեմ գրել, կա միայն «Բարի գալուստ»: Գորշ Վիշտ մոլորակից չեն հեռանում, այստեղ միայն գալիս են...)

Ոտքերս բոլորովին դադարում են հնազանդվել: Ես երերում եմ, ապա ամբողջ՝ հասակով տապալվում գետնին: Զգում եմ, որ եթե մի պահ անգամ անշարժանամ, ապա այլևս շարժվել չեմ կարողանա: Սկսում եմ սողալ...

Մարդկանց պատմում եմ այն ամենի մասին, որ գիտեմ, որ տեսել եմ ու զգացել: Պատմում եմ այն մասին, որ միլիոն տարեկան եմ, որ կայարանում երկրորդ աստղանավ իջնել չի կարող, որ իմ ռոբոտը չափազանց հիմար է, որ Գորշ Վիշտ մոլորակի հյուսիսային բևեռում ուղիղ 12 լիճ կա և նրանց ափերին

միայն կապույտ գույնի մացառներ են աճում:

Մի կերպ հասնում եմ բլրի գագաթն ու սկսում վերևից փնտրել նավը: Նայում եմ կայանը, նայում եմ շրջակա հովիտը: Աստղանավ չկա, մարդիկ չկան, և միայն բետոնե պլվելիորեն փոքրիկ հարթակն է կարմրավուն փայլում աստղերի լույսի տակ: Ես խաբվել եմ: Նավ չկա...

Որպեսզի լաց չլինեմ, սկսում եմ բարձրաձայն ծիծաղել: Չափազանց երկար եմ ծիծաղում, գուցե մի քանի ժամ, գուցե մի քանի օր: Այնքան եմ ծիծաղում, որ հոգնում եմ և այլևս լաց լինելու տրամադրություն չի մնում: Ոտքերս հավիվհավ քարշ տալով, քայլում եմ դեպի իմ աստղանավը...

— Ուրեմն ես չկա՞մ,— բոլորովին անտարբեր հարցրի ես:

Ռոբոտը, որ ամեն անգամվա պես վարժացել էր ինձ ողջ տեսնելով, գոհ քրքջաց.

— Դե, իհա՛րկե, չկաս: Դու արդեն հասկացա՞ր այդ:

— Չէ՛, պարզապես սկսեցի հավատալ քեզ,— ես հառաչեցի:— Ես չկամ, գոյություն չունեմ:

— Ճիշտ է,— ամբողջովին փայլելով ասաց նա,— և բոլորովին նշանակություն չունի, որ խոսում ես ինձ հետ: Ես մեքենա եմ և կամ: Ես գոյություն ունեմ որպես մեքենա: Իսկ դու մարդ ես և որպես մարդ չըկաս:

— Չկամ,— համաձայնեցի ես:

— Գուցե դու էլ գոյություն ունես որպես մեքենա,— երևի ռոբոտը խղճաց ինձ:

— Գուցե կամ,— կրկին համաձայնեցի ես:

— Լա՛վ է...

Ի՞նչն էր լավ: Ոչ մի լավ բան էլ չկար: Ես կրկին հեռացա ռոբոտի մոտից: Քայլում էի քարքարոտ լեռնալանջով ու մտածում, որ գուցե ճիշտ են վարվել այն մարդիկ, որոնք դեն են նետել այս մոլորակից գնած անմահությունը: Նրանք գուցե և խելացի են վարվել, բայց եթե այդպես չանեին, ես կհանդիպեի նրանց ու մենակ չէի մնա:

Ես որոշեցի մենակ չթողնել ինձանից հետո եկողներին...

Հիմա ես արդեն թվով չորրորդ աստղանավակայանն եմ կառուցում: Կառուցում եմ շատ դանդաղ, շատ անտարբեր, բայց կառուցում եմ: Համենայն դեպըս դա գործ է, և, բացի այդ, ռոբոտն աստղանավակայաններ չի կառուցում: Նա երբեմն որոշ բաներ է հաշվում ինձ համար, և այդքանը միայն:

Աստղանավակայանները պետք են նրանց, ում ես եմ սպասում: Իսկ ռոբոտը չի սպասում, նա նույնիսկ չգիտե, թե ինչ բան է սպասելը...

*Թևավոր խոսքեր*

## ԱՌԱՋԻ՛Ն ՄԵԾՈՒԹՅԱ՛Ն ԱՍՏՂ

Մենք տեսնում ենք, որ աստղերը երկնքում լույս են արձակում ոչ հար և նման միմյանց. դրանց մի մասը ավելի խոշոր ու վառ է թվում, մյուսները՝ հազիվ առկայծում են:

Հին-հին դարերում աստղագետները անզեն աչքով երևացող աստղերը բաժանում էին վեց կարգի կամ մեծության. ամենից պայծառ աստղերը՝ «առաջին մեծության», ամենից թույլ առկայծողները՝ «վեցերորդ մեծության»:

Հզոր աստղադիտակների ցյուտից հետո ստիպված եղան այդ դասակարգումը վերանայել: Բայց ժողովրդի մեջ պահպանվել է աստղային հին աղյուսակի հիշողությունը: Եվ երբ ասում ենք. «Դե նա առաջին մեծության աստղ է»,— նշանակում է. «Նա անհամեմատելի մեծություն է, նշանավոր մասնագետ, խոշորագույն դեմք իր ասպարեզում»:



## ՈՍԿԵԴԱՐ

Հնում մարդիկ հավատում էին, որ երկրի կյանքը, նրա ծագումից սկսած, բաժանվում է իրար չնմանվող «դարերի»: Դաժան «երկաթե դարին» նախորդել է խաղաղ «պղնձե դարը», իսկ մարդկության ստեղծման արշալույսին մարդիկ վայելել են «ոսկեդարի» անհոգ երջանկությունը: Այն ժամանակ չի եղել ո՛չ չարիք, ո՛չ վախ, չի եղել ո՛չ օրենք, ո՛չ դատ, ո՛չ էլ պատերազմ, սով ու հանցագործություն,— համենայն դեպս այդպես էին պատմում պոետները՝ հույն Հեսիոդոսը, հռոմեացի Օվիդիոսը... «Ապրում էին մարդիկ անգործ ու անհոգ,— պատմում է Հեսիոդոսը:— Խնջույքներով էին անցկացնում ժամանակը... Հարուստ հողը ինքնիրեն առատ բերք էր տալիս...»

Հների միամիտ հավատը վաղուց է մեռել, բայց «ոսկե դար» արտահայտությունը մենք դեռ կըրկնում ենք, երբ ուզում ենք ասել ամենալավ ժամանակների, ծաղկուն ժամանակների մասին: Օրինակ ասում ենք. «Իտալական գեղանկարչության ոսկեդար» կամ թե՝ «դա մեր որսորդների ոսկեդարն էր»:





# ՊԱՏՄՎԱԾՔ, ՈՐԻ ՎԵՐՆԱԳԻՐԸ

*ԱԼԵՔՍԱՆ ՄԵՆԱԿՅԱՆ*

Փոքրիկի տեսածը ուղղակի անհավատալի է: Այս նոր ու անծանոթ բնակավայրի մարդիկ բաժանվել են երկու խմբի, հավաքվել իրար մոտիկ երկու գերեզմանի շուրջը: Երկու խմբի աչքերից էլ արտասուք է հոսում: Բայց մի խումբը վշտից է արտասվում, մյուսը՝ ցնծությունից:

Ահա ցնծացողներից մի քանիսը մոտեցան սգավոր խմբին և իրենք էլ քարացան վշտից: Ահա մի քանի սգավորներ մոտեցան ցնծացողների խմբին և իրենք էլ սկսեցին ուրախանալ ու ցնծալ: Ա՜յ քեզ տարօրինակ տեսարան:

— Ինչո՞ւ եք այդպես անում,— հարցնում է Փոքրիկը իր հասակակից աղջիկներից մեկին, որը հենց նոր հեռացավ ցնծացողներից ու միացավ սգավորներին:

— Դու նախ մասնակցիր մեր վշտին և ուրախությանը,— ասում է աղջիկը,— նոր ես քեզ ամեն ինչ կբացատրեմ:

— Ես շատ եմ ուզում մասնակցել ձեր վշտին և



ուրախությանը, բայց չգիտեմ, թե դուք ինչու եք վշտանում և ուրախանում:

Աղջկա դժգոհ աչքերը մեղմանում են:

— Հիմա ես քեզ ամեն ինչ կպատմեմ: Մեր քաղաքում են ապրում ամենահնարամիտ գիտնականները: Նրանք ուղղակի կախարդներ են: Նրանք հրաշալի մեքենաներ են ստեղծել, որոնք կատարում են բոլոր տեսակի ծանր աշխատանքները: Ուրիշ տեղերի մարդիկ նախանձում են մեզ, որովհետև մեզնից ամեն մեկը կլոր տարին ազատ զվարճանում է և ընդամենը մեկ կամ երկու օր է հերթապահում մեքենաների աշխատանքը ղեկավարող խցիկներում: Իսկ ձեզ մոտ մեքենաները չե՞ն աշխատում,— հարցնում է աղջիկը:

— Աշխատում են,— պատասխանում է Փոքրիկը,— բայց այդքան շատ ժամանակ չի մնում մարդկանց զվարճանալուն:

— Դա վատ չէ,— ասում է աղջիկը մտածկոտ:— Դուք հեռու եք փորձանքից, որը կկործաներ մեզ, եթե Ճերմակահերը չզոհեր իր կյանքը: Նա մեր ամենածեր և ամենաիմաստուն գիտնականն էր: Նա ջարդեց մարդանման մեքենաները:

— Որտեղի՞ց ձեզ այդպիսի մարդանման մեքենաներ:

— Ճերմակահերն էր պատրաստել այդպիսի մեքենաներ, որոնք կարող են մարդու նման խոսել, մտածել, աշխատել ու դավադրություններ կազմակերպել մարդկանց դեմ: Մի օր ամբողջ բնակչությունը հավաքվել և պահանջել էր գիտնականներից. «Մենք ոչ մի օր էլ չենք ուզում հերթապահել ղեկավարման խցիկներում: Դուք այնպիսի մեքենաներ հնարեցեք, որ մեր փոխարեն այդ գործն էլ անեն»: Ճերմակահերը փորձել էր հրաժարվել: «Եթե մենք մարդու նման խելացի մեքենաներ ստեղծենք, նրանցից կարող է նաև փորձանք գալ մեզ»,— ասել էր նա: «Ոչ մի փորձանք էլ չի գա,— առարկել էին երիտասարդ գիտնականներից, որոնք ուզում էին միանգամից ավելի հռչակավոր դառնալ, քան Ճերմակահերն էր:— Ամենամտածող ու խելացի մեքենան էլ չի կարող մեզ վնաս տալ: Պարզապես Ճերմակահերը արդեն ծերացել է, դարձել կասկածամիտ և այլևս առաջվա պես չի կարողանում գուշակել մեր գործի ապագան»: Այս խոսքերը և քաղաքի մարդկանց համառ պահանջները վրդովեցին Ճերմակահերին, վիրավորեցին նրան և ստիպեցին անմիջապես գործի անցնել: Եվ նա տեղնուտեղը ապացուցեց, որ իր միտքը չի բթացել ծերու-

# ՀԱՅՏՆԻ Է ԴԱՌՆՈՒՄ ՎԵՐՋՈՒՄ

*Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՐԶԱԲԵԿՅԱՆԻ*

թյունից: Եվ հենց ինքն էլ ստեղծեց մարդու նման քայլել, խոսել, աշխատել և ուրիշ մեքենաների աշխատանքը ղեկավարել կարողացող նոր մեքենաներ, որոնց մենք անվանեցինք «օգնականներ»: Ինչպես որ հրաշալի օգնականներ դուրս եկան դրանք: Անդադրում կատարում էին ամեն մի աշխատանք և դրա դիմաց ո՛չ վարձ էին պահանջում, ո՛չ էլ զվարճանքի: Ո՛չ էլ հոգնում էին աշխատելուց: Հետո մեր գիտնականները Ճերմակահերի ղեկավարությամբ, ավելի խելացի և ուժեղ «օգնականներ» ստեղծեցին: Այլևս ոչ մի մարդ դաշտում կամ քաղաքում եղած ղեկավարման լծակները չէր մոտենում: Ամեն ինչ անում էին «օգնականները», իսկ մարդիկ զվարճանում էին, ճանապարհորդում և մեծարում մեր իմաստուն ու տաղանդավոր գիտնականներին: Հետո գիտնականների գործն էլ հեշտացավ, որովհետև ամենախելացի «օգնականները» իրենք սկսեցին նոր մեքենաներ ու իրենց նման մտածող, քայլող, խոսող աշխատող «օգնականներ» ստեղծել: Շուտով բոլոր գիտնականներն էլ ազատվեցին աշխատելու և մտածելու հոգսից: Կլոր տարին զբաղվում էին զվարճություններով: Իսկ «օգնականները» արդեն բազմանում էին իրենք իրենց: Երիտասարդ գիտնականները գոհ էին: Բայց Ճերմակահերը օրեցօր ավելի մտահոգ էր դառնում, գիշեր-ցերեկ լաբորատորիայից դուրս չէր գալիս, դուրս գալուց հետո էլ գնում էր գործարանները, դաշտերը, ժամերով հետևում «օգնականների» աշխատանքին:

Աղջիկը նորից լռում է, նայում Փոքրիկին, որն արդեն ձանձրանում է նրա երկար, բայց դեռ ոչինչ չբացատրող պատմությունից: Հետո արագ-արագ շարունակում է.

— Մի գիշեր, երբ բոլորս հանգիստ քնած էինք, լսվեց ահավոր պայթյուն, որից մեր քաղաքի բոլոր պատուհանների ապակիները փշրվեցին ու տեղահանվեցին, շատ շենքերի պատեր ճաքեցին: Բոլորս վեր թռանք: Մեծ լաբորատորիան ու «օգնականների» շենքը վեր էին ածվել ավերակների և այրվում էին: Ճերմակահերի այրված դիակը հազիվ գտան փլատակների տակից: Իսկ «օգնականները» դարձել էին փշրված ու ծռմռված մետաղակույտեր: Ճերմակահերի գրպանում գտան մի չհրկիզվող ծխախոտատուփ: Նրա մեջ մի նամակ կար: Կարդացինք և իմացանք «օգնականների» դավադրության մասին: Նրանք ծրագրել էին բնաջնջել մարդկանց, տեր դառնալ քաղաքին: Ճերմակահերը հասկացել էր այդ և ճիշտ ժամանակին ոչնչացրել դավադիրներին: Պայթյունը այնքան ուժեղ էր, որ Մեծ լաբորատորիան էլ էր հօդս ցնդել: Այժմ մերոնք սուրհանդակներ են ուղարկել բոլոր քաղաքները, որպեսզի զգուշացնեն նրանց, ովքեր մեր քաղաքից «օգնականներ» են տարել,— ասում է աղջիկը և հարցնում.— Իսկ ձերոնք չե՞ն տարել դրանցից: Եթե տարել են, շտապի՛ր այնտեղ և զգուշացրու ձերոնց նույնպես, քանի դեռ ուշ չէ:

Մինչև նա դառնալը Փոքրիկը մոտեցավ Ճերմակահերի գերեզմանին և նրա աչքերից էլ արտասուք հոսեց: Հետո նա նայեց այն խմբին, որ ցնծում էր թաղված «օգնականների» գերեզմանի վրա, և նրա սիրտն էլ ցնծաց ուրախությունից: Հետո Փոքրիկը հանեց իր ծոցատետրը, մի փոքր մտածելուց հետո գրեց այս հետաքրքիր բնակավայրին ու մարդկանց հարմար մի անուն. «ՍԳԱՎՈՐ ՑՆԾԱՑՈՂՆԵՐԻ ՔԱՂԱՔ»: Եվ շտապեց նա՝ զգուշացնելու իրենց ավանի բնակիչներին:



## ՍՍՀՄ ՄԵԾ ԹԱՏՐՈՆԻ 200-ԱՄՅԱԿԸ



# ՄԵՐ ՀՊԱՐՏՈՒԹՅՈՒՆՆ Է

Արվեստի օջախներ կան, որոնք մի առանձին հարգանք և սեր են վայելում, որոնք դարձել են մեր ժողովրդի մշակույթի զարգացման կենդանի պատմություն ու նվաճումների խորհրդանիշ: Այդպիսին է ՍՍՀՄ Մեծ թատրոնը, որին մշտապես ուղղված է երաժշտասերների հայացքը, որի 200-ամյա հոբելյանը նշվեց այս տարի:

Հռչակավոր օպերային թատրոնի սկզբնավորումը չափազանց համեստ էր: 200 տարի առաջ Մոսկվայում թատրոնի մշտական շենք չկար: Օպերային առաջին ներկայացումները տրվում էին արվեստասեր կոմս Վորոնցովի տանը: Բեմը անհարմար էր, դահլիճը՝ փոքր: Էլ չենք ասում այն մասին, որ ներկայացումների հանդիսականները կոմսի բարձրաստիճան հյուրերն էին, իսկ աշխատավոր ժողովրդի առաջ թատրոնի դռները փակ էին:

1780 թվականին կառուցվեց այսպես կոչված «Պետրովկայի թատրոնը» (գտնվում էր Պետրովկա փողոցի անկյունում), սակայն քառորդ դար չանցած՝ հրդեհի ժամանակ այրվեց: Մի շարք ժամանակավոր բեմերում ելույթ ունենալուց հետո, օպերային թատերախումբը, վերջապես, 1825 թվականին տեղափոխվեց թատրոնի նորակառույց շենքը, որը պատահական չէ, որ «Մեծ թատրոն» անունը ստացավ: Պրոֆեսոր Ա. Միխայլովի և ճարտարապետ Օ. Բովեի նախագծով կառուցված թատրոնը իր մեծությամբ երկրորդն էր Եվրոպայում (Միլանի «Լա Սկալա» թատրոնից հետո): Այդ հոյակապ շենքը այսօր էլ զարդարում է Մոսկվայի Սվերդլովի անվան հրապարակը: Տպավորիչ է արտաքին ճակատը (պսակավոր սյուներ՝ քառաձի կառք վարող Ապոլոնի արձանով), շքեղ են ճեմասրահը և դահլիճը (ջահեր, ոսկեզօծ օթյակներ, կարմիր թավշով պատած բազկաթոռներ):

Բայց միայն շենքի մեծությունը չէ, որ թույլ է տալիս այդ թատրոնը «Մեծ» անվանել: Հատկապես թատրոնի մեծատաղանդ կոլեկտիվը իր երկուհարյուրամյա պատմության ընթացքում մշակել է գեղարվեստա-կատարողական կայուն ավանդույթներ, հարուստ և բազմազան խաղացանկ, ընդ որում արտիստների յուրաքանչյուր նոր սերունդ իր արժեքավոր ավանդն է ներդրել ընդհանուր գործի մեջ:

Դեռևս անցյալ դարում թատրոնի ռեալիստական սկզբունքների հաստատման համար խիստ կարևոր էր կոլեկտիվի աշխատանքը ազգային դասական օպերաների վրա: Պատմության մեջ մտան Գլինկայի «Իվան Սուսանինը» և «Ռուսլան և Լյուդմիլան», Դարգոմիժսկու «Ջրահարսը», Ռուբինշտեյնի «Դևը», Մուսորգսկու «Բորիս Գոդունովը», Բորոդինի «Իշխան Իգորը», Ռիմսկի-Կորսակովի «Ձյունանուշը», Չայկովսկու «Պիկովայա դաման», «Եվգենի Օնեգինը»... Միաժամանակ Չայկովսկու «Կարապի լիճը» բալետի բեմադրությամբ առաջին մեծ հաջողությանն է հասնում թատրոնի բալետային խումբը:

Մեծ թատրոնի բեմում իրենց խորապես հուզիչ, բարձր պրոֆեսիոնալ մարմնավորումը գտան նաև արևմտա-եվրոպական կոմպոզիտորների լավագույն ստեղծագործությունները՝ Մոցարտի և Բեթհովենի, Վագների և Մեյերբերի, Ռոսինիի և Վերդիի, Գունոյի և Բիզեի, Պուչչինիի և տասնյակ այլ հեղինակների օպերաները: Այսպիսով Մեծ թատրոնի կոլեկտիվի համար բնորոշ է դառնում հետաքրքրությունը թե՛ ազգային, թե՛ համաշխարհային արվեստի գոհարների նկատմամբ:

Մեծ թատրոնում ելույթ են ունեցել աշխարհահռչակ շատ երաժիշտներ: Ժամանակին այստեղ իրենց [illegible] հանդես են ե-

կել Ռուբինշտեյնը, Չայկովսկին, Ռախմանինովը. 20-րդ դարի սկզբին նրա բեմում փայլեց հիանալի երգիչների մի համաստեղություն. Ֆյոդոր Շալյապինը, Անտոնինա Նեժդանովան, Լեոնիդ Սոբինովը... Անջնջելի տպավորություն էին գործում ոչ միայն նրանց ձայնը և երգային բարձր կուլտուրան, այլև իսկական արտիստականությունը, բեմական խաղի ճշմարտացիությունը:

Սովետական կարգերի օրոք Մեծ թատրոնի կոլեկտիվը նոր հզոր վերելք ապրեց: Արմատապես փոխվեց հանդիսականների կազմը: Թատրոնը դարձավ երաժշտական կուլտուրայի տարածողը ժողովրդի ամենալայն շրջաններում: Բնականաբար, առանձին ուշադրության արժանացան սովետական կոմպոզիտորների նոր ստեղծագործությունները: Տարբեր տարիներին թատրոնը բեմականացրեց Պրոկոֆևի «Պատերազմ և խաղաղություն», Շոստակովիչի «Կատերինա Իզմայլովա», Ձերժինսկու «Խաղաղ Դոն» օպերաները, Գլիերի «Կարմիր կակաչ», Պրոկոֆևի «Ռոմեո և Ջուլիետ», Ասաֆևի «Բախչիսարայի շատրվանը» բալետները և տասնյակ արժեքավոր այլ գործեր: Հատկապես մեծ էր թատրոնի բալետային խմբի հաջողությունը, որը հյուրախաղերով շուրջ 50 անգամ հանդես է եկել տարբեր երկրներում, նվաճելով «աշխարհիս լավագույն բալետի» հռչակը (հիշենք թեկուզ մենապարուհի Օլգա Լեպեշինսկայայի, Գալինա Ուլանովայի, Մայա Պլիսեցկայայի չգերազանցված արվեստը): Բայց Մեծ թատրոնը հռչակվեց ոչ միայն իր բալետով: Ամբողջ աշխարհին հայտնի են դիրիժորներ Ն. Գոլովանովի, Ս. Սամոսուդի, երգիչներ Ս. Լեմեշևի, Վ. Բարսովայի, Ի. Կոզլովսկու, թատերական նկարիչ Ֆ. Ֆեդորովսկու, բալետմեյստերներ Լ. Լավրովսկու, Յու. Գրիգորովիչի, ռեժիսոր Բ. Պոկրովսկու անունները...

Մեծ թատրոնը բազմաթիվ կապերով կապված է հայ մշակույթի հետ: Դեռևս 1930-ին Մեծ թատրոնի ֆիլիալը առաջին անգամ բեմադրեց Ալ. Սպենդիարյանի անմահ «Ալմաստ» օպերան: Թատրոնի լավագույն ներկայացումների թվին են պատկանում Ա. Խաչատրյանի «Գայանե» և «Սպարտակ», Ս. Բալասանյանի «Լեյլի և Մեջնուն» բալետները: Երկար տարիների ընթացքում Մեծ թատրոնի դիրիժորն էր (նաև գլխավոր դիրիժորը) Ալեքսանդր Մելիք-Փաշայանը, իսկ առաջատար երգիչների շարքում էր մեծատաղանդ Պավել Լիսիցյանը: 1939 և 1956 թվականներին հայկական արվեստի և գրականության տասնօրյակների ժամանակ Մեծ թատրոնի բեմում ցուցադրվեցին Երևանի օպերային թատրոնի ներկայացումներից՝ Ալ. Սպենդիարյանի «Ալմաստը», Ա. Տիգրանյանի «Անուշը» և «Դավիթ բեկը», Հ. Ստեփանյանի «Լուսաբացին»-ը և ուրիշներ:

Մեծ թատրոնը անգնահատելի ավանդ ունի սովետական բազմազգ ժողովրդի թատերական-օպերային արվեստի զարգացման գործում: Իր հարուստ ավանդույթների, կատարողական բարձր մակարդակի շնորհիվ նա դարձել է համաշխարհային առաջադիմական երաժշտական մշակույթի ճանաչված կենտրոն: Մեծ թատրոնը մեր արվեստի, մեր ժողովրդի հպարտությունն է:

*ԱՐՄԵՆ ԲՈՒԴԱՂՅԱՆ*

# ՆՈՐ ՊԱԼԱՏ

Էրեբունի փողոցի վրա շահագործման է հանձնվել Երևանի Օրջոնիկիձեի շրջանի պիոներների և դպրոցականների նորակառույց պալատի համալիրը:

Պալատ այցելող դպրոցականներին տրամադրվում են մարզական սրահները, լողավազանը, աստղադիտարանը և բազմաթիվ լսարաններն ու պարապմունքների սենյակները: Ընդհանուր հավաքներն ու ժողովները անցկացվում են 360 տեղանոց դահլիճում: Ամեն օր պալատի 26 խմբակների պարապմունքներին մասնակցում են 350—400 երեխաներ: Պալատը միանգամից իր գիրկն է առնում 2500 դպրոցականների:

Գեղեցիկ ու ճաշակով ձևավորված պալատն ունի նաև ձմեռային ու ամառային կանաչապատ հատվածներ և 700 քառ. մետր տարածությամբ բակ:





# ՊԱՏԱՆԻ ՏՐԱԿՏՈՐԻՍՏՆԵՐԸ

Հարթավայրում խոտհունձն ավարտվել էր: Հընձվորները բարձրադիր վայրեր էին տեղափոխվել: Նրանց հնձածը հավաքում էին դպրոցականները: Ահա խոտի կույտերից մեկին մոտեցավ քարշակով տրակտորը: Տրակտորից դուրս եկան միայն դպրոցական տղաներ: Նրանք եղաններն առան ու սկսեցին քարշակը բեռնել: Հետո Անդրանիկը թափքը բարձրացավ, մյուսները եղանով խոտը տալիս էին նրան, իսկ նա դասավորում էր: Թափքը լցվեց: Սամվելը տրակտորը մոտեցրեց հաջորդ կույտին: Խոտի կույտերը մեկը մյուսի ետևից անհետացան թափքում:

Խոտի հաջորդ կույտերին մոտենալու համար Սամվելը նորից խցիկ մտավ: Խոտը շատ էր բարձած: Մի անզգույշ շարժում, և այն կարող էր շուռ գալ: Դրա համար էլ Սամվելը անխոս իր տեղը զիջեց Յուրային: Վերջինս տրակտորը սահուն պոկեց տեղից: Նրա դեմքը կենտրոնացած էր ու խիստ, դիմագծերը լարված էին. բեռնված տրակտորը այդ փոքր տարածությունում վարելը շատ դժվար էր:

Երբ բեռնելն ավարտեցին, Սամվելը վերցրեց հսկայական պարանի մի ծայրը և մի քանի անգամ փորձելուց հետո, վերջապես հասցրեց վերևի տղաներին: Պետք էր քարշակի չորս անկյուններում պինդ ամրակապեր տալ, որ ճանապարհին խոտը շուռ չգար: Երկուսը վերևից, երկուսը ներքևից, ծանր հոգոցներով ու կտրուկ շարժումներով, պարանը լավ ձգեցին, գլխակապեր տվին, ու չորսն էլ խըցիկում տեղավորվելով՝ ճանապարհ ընկան:

Քարշակը մեկ աջ էր ճոճվում, մեկ՝ ձախ, կամ կտրուկ առաջ թռչում և թվում էր, թե ուր որ է շուռ կգա: Սակայն ամեն ինչ բարեհաջող ավարտվեց: Տրակտորը մայրուղի ելավ և գնաց դեպի Թալինի պետական տնտեսությունը:

Այսպես, թալինցի դպրոցականները արձակուրդներին օրական ութ տոննա խոտ էին բեռնում և տեղափոխում: Բոլոր աշխատանքները կատարում էին ինքնուրույն: Տրակտոր վարելը նրանց սովորեցրել էր իրենց դասընկերոջ՝ Մարզպետի հայրը, որին ապա փոխարինում էին Մարզպետն ու իր ընկերները:

# ԱՆԳԼՈՒԽ ՏՂԱՆ

ԼԵՎՈՆ ՄԻՐԻՋԱՆՅԱՆ



Առավոտից իրիկուն
Չունի դադար, չունի քուն:
Տանը, բակում, դպրոցում
Գոլից-գոլ է հարվածում,
Փրկում ամեն մի գոլից,
Եվ բացի իր ֆուտբոլից,
Չի՛ նկատում ոչ մի բան
Շատ անհանգիստ այս տղան:
Եվ մայրն է շատ նախատում,
Ուսուցիչն է խրատում,
Նա չի լսում ոչ մեկին,
Խելքը տվել է ոտքին:

Ափսո՜ս տղա, մեղք է խիստ,
Գուցե դառնա ֆուտբոլիստ,
Գուցե դառնա՛, ի՞նչ կա որ,
Ֆուտբոլիստին ոտքի հետ,
Բայց գլուխ է հարկավոր...





Նկ. ԿԱՐԵՆ ՄԱՐ[illegible]

## ՊԻՈՆԵՐ-ի փոստից

Արձագանքում են IX դասարանցու նամակին

### ՀԱՐԳԵԼԻ՛ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

Ես սովորում եմ Ստեփանավանի № 1 դպրոցի 3-րդ «ա» դասարանում: Ես կարդացի այդ 9-րդ դասարանցու նամակը և ցանկանում եմ օգնել նրան:

Հարգելի՛ 9-րդ դասարանցի

Ես սովորում եմ 3-րդ դասարանում, բայց այդքան սխալ թույլ չեմ տալիս: Ես ամաչում եմ քո փոխարեն: Մենք՝ փոքրերս, պետք է օրինակ վերցնենք մեծերից, չէ՞ որ դու էլ մեծ ես, ի՞նչ օրինակ վերցնեմ քո նամակից: Կարդամ նամակդ և նույն ուղղագրական սխալները թույլ տա՞մ իմ տետրում: Միգուցե իմ գրածի մեջ էլ կան սխալներ, բայց չէ՞ որ ես դեռ փոքր եմ: Ինչքան էլ փոքր լինեմ՝ ինձ թույլ չեմ տա այդպիսի կոպիտ ուղղագրական սխալներ անել:

Անահիտին և Արտաշին փնտրելու փոխարեն ավելի լավ կլիներ փնտրեիր քո գրած բառերի ճիշտ ուղղագրությունը:

*ՆԱԻՐԱ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ*

### ՀԱՐԳԵԼԻ՛ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

Մենք մեր դասարանով կարդացինք այդ իններորդ դասարանի աշակերտուհու նամակը և շատ ծիծաղեցինք: Իններորդ դասարանի աշակերտուհին չկարողանա՞ նամակ գրել... Ինչպե՞ս կարող է իններորդ դասարանի աշակերտը նամակի մեջ այդքան շատ սխալներ թույլ տալ:

Հարգելի՛ խմբագրություն, մենք ուզում ենք իմանալ այդ աշակերտուհու հասցեն, անունը և ազգանունը:

*ՌԱԶՄԻԿ ՂԱԶԱՐՅԱՆ*
*Հրազդանի շրջան, գյուղ Վերին Ախտա, 3-րդ դաս. աշ.*

Լույս է տեսնում 1928 թվականից



# ՊԻՈՆԵՐ

№ 6 Հունիս 1976 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
ՆԿ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԴՐԻԴԱՐՅԱՆ Վ., ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍԱՐԳՍՅԱՆ Լ. (պատասխանատու քարտուղար), ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96

ՎՖ 06664: Պատվեր 785: Տպաքանակ՝ 76906: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 3/VI 1976 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:





ԳԻՆԸ 10 Կ. ԻՆԴԵՔՍ 77806

# ԽԱՉԲԱՌ «ԹՌՉՈՒՆՆԵՐ»

Օգտվելով սկզբնատառերից՝ խաչբառի վանդակներում լրացրեք թռչունների անունները:

Նկար-առաջարկ՝ ՅՈՒԼԱԿ ՂԱՆԴԻԼՅԱՆԻ





ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆ ՎԱՐԴԱՆ. 8 տ.
*Արտաշատի շրջան, գյուղ Մխչյան*



ԲԱՐՍԵՂԱՄՅԱՆ ՓԱՌԱՆՁԵՄ
*Հոկտեմբերյան, VI դաս.*



ՎԻՐԱԲՅԱՆ ՌԱՅԱ
*Թումանյանի շրջան,*
*գյուղ Սաթեր, IV դաս.*